ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ (ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԳԻՏԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
Երևան № 1 1941 թ.

Ի. ԱԲՈՒԼԱՁԵ (ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու, ստալինյան թոշակառու):

# ՔԱՐԹԼԻՍ ՑԽՈՎՐԵԲԱՅԻ ԿԱՄ ՎՐԱՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԻՆ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆԸ:*)

«Քարթլիս Ցխովրեբայի» հայերեն խմբագրությունը, որ «Վրաց Պատմություն» վերնագիրն է կրում, մինչև հիմա ութ ձեռագրով է հայտնի: Սրանցից մեկը, որն ակադ. Մ. Բրոսեն թարգմանել է ֆրանսերեն և հրատարակել 1851 թ., պահպանվում է Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտում, մյուսը՝ Վենետիկի Մխիթարյանների գրադարանում, երրորդը՝ Փարիզի ազգային Մատենադարանում, իսկ մնացած հինգ օրինակները Հայկ. Ս.Ս.Ռ.Մ Մատենադարանի (Երևանում) սեփականությունն են կազմում:

«Քարթլիս Ցխովրեբայի», այսինքն՝ Վրաց Պատմության հայկական ձեռագրերից հրատարակված է միայն Վենետիկի Մխիթարյանների ձեռագիրը: Այս հրատարակությունը կատարված է 1674 թ. գրչություն ունեցող մի ձեռագրի արտագրության հիման վրա, որը մի ժամանակ պահպանում էր Կարինի առաջնորդ Կարապետ Բագրատունին, բայց հետագայում տեղ գտավ Էջմիածնի ձեռագրերի հավաքածուի մեջ (№ 3070): Փարիզի ազգային Մատենադարանի ձեռագիրը, այդ հիմնարկության հայկական ու վրացական ձեռագրերի ցուցակագրող Macler-ի տված տեղեկության համաձայն Dulaurier-ն է արտագրել այն ձեռագրից, որից և Վենետիկի ձեռագիրն է գալիս:

Ոչ միայն Վենետիկի և Փարիզի օրինակները, այլ և այն հայերեն ձեռագիրը, որից Բրոսեն կատարել է իր ֆրանսերեն թարգմանությունը, ակադ. Ն. Մառի տված տեղեկության համաձայն, Կարապետ Բագրատունու սեփական ձեռագրից է արտագրված,

Այսպիսով, վերոհիշյալ չորս ձեռագրերն արտագրված են իրարից: Սրանց մեջ ամենահինը Կարապետ Բագրատունու օրինակն է, որը, ինչպես նշել ենք, այսօր գտնվում է Հայաստանի Մատենադարանում (№ 3070): Մնացած չորս օրինակներից, որոնք նույնպես պահպանվում են Մատենադարանին, վաղուց հայտնի է № 1902, որն ըստ գրության, ամենահին օրինակն է: Ակադ. Մ. Բրոսեի որոշմամբ այս ձեռագիրը գրված է 1279—1311 թվականների միջև ընկած ժամանակաշրջանում[1]): Մնացած երեքից՝ երկուսն անցյալ դարի օրինակներ են. մեկը, ինչպես մեր համեմատությունից պարզվեց, նույնպես Կարապետ Բագրատունու ձեռագրից է արտագրված 1840 թ., վրացերեն ու ռուսերեն իմացող Արիստակես Երզնկյանցի ձեռքով, Թբիլիսիում, իսկ մյուսը՝ № 3052 հայտնի հայագետ պրոֆ. Բ. Պատկանյանն է պատրաստել, ըստ երևույթին, տպագրելու համար: Վերջին, ութերորդ, օրինակը № 5501, որ 1683 թ. է գրված ինչպես պարզվեց Մատենադարանի մյուս ձեռագրերի հետ արված համեմատությունից, ամենամոտիկ հարաբերության մեջ է հնագույն ձեռագրի (№ 1902) հետ: Ինչպես տեսնում ենք, բոլոր

[1]) M. Brosset, Rapports sur un voyage archéologique etc., III rap., p. 62, SPB, 1849.

[1] Զեկուցում՝ կարդացված Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Ձեռագրերի ուսումնասիրության ինստիտուտի (Մատենադարանի) գիտական սեսիայի 1940 թ., 39-X նիստում:

վերոհիշյալ ձեռագրերը, բացի Բ. Պատկանյանի ձեռագրից, գալիս են վերջ ի վերջո երկու ձեռագրից:




Ինչպիսի՞ առնչություն կա սրանց միջև:

Մասնագետների կարծիքով՝ գոյություն ունեցող և մեզ հասած բոլոր ձեռագրերն առաջացած պետք է լինեն ամենահին օրինակից (№ 1902-A): Այդ կարծիքը նրանք հիմնավորում են այն բանով, որ ամենահին օրինակի վերջին թերթն ընդհատվում է այնպիսի բառով («նստույց»), որով վերջանում են նաև հետագա ժամանակների բոլոր ձեռագրերը: Ակադ. Ն. Մառը նկատել է այն հանգամանքը, որ հիշյալ ձեռագրի վերջին թերթը կտրված է և այդ կտրված թերթից տողերի սկզբի տառերի միայն մի մասն է երևում: Նրա կարծիքով՝ այս թերթի վրա զետեղված պետք է լիներ «Բարթլոս Ցեսվլերայի» թարգմանության մի փոքրիկ մասն ու արտագրողի կամ ստացողի հիշատակարանը:[1] Անշուշտ մյուս օրինակներն այն ժամանակ պետք է արտագրված լինեն, երբ ձեռագրից պակասել է վերջին թերթը, և ինչպես ակադ. Ն. Մառն է կարծում, հենց այս է պատճառը, որ հայերեն բնագրի բոլոր օրինակները վերջանում են նույն ընդհատված «նստույց» բառով: Այսպիսով, ուրեմն, գոյություն ունեցող բոլոր օրինակների համար հանված է սկզբնագիրը, այսինքն՝ 1279-1311 թթ. միջև գրված «Բարթլոս Ցեսվլերայի» ամենահին հայերեն ձեռագիրը (№ 1902):

Ակադ. Ն. Մառի հիշյալ դիտողությունը, որի համաձայն «Բարթլոս Ցեսվլերայի» հայերեն տեքստն ընդհատված «նստույց» բառից հետո շատ չպիտի շարունակվեր, այլ քիչ հետո պիտի վերջանար, ինձ ճիշտ է թվում: Բարթլոս Ցեսվլերայի» հայերեն տեքստը պիտի վերջանար Դավիթ Շինողի պատմությամբ, այսինքն՝ վերջին տողերը պիտի պատմեին Դավթի մահվան և նրա ժառանգի գահ բարձրանալու մասին: Այս դեպքը նկարագրելու համար ինչպես երևում է, բավական էին առաջին իսկ տողերը. թե ինչու, այդ կտեսնենք հետո: Ինչ վերաբերում է ակադ. Ն. Մառի արտահայտած կարծիքին, որի համաձայն «Բարթլոս Ցեսվլերայի» հայկական տեքստից հետո զետեղված պիտի լիներ արտագրողի հիշատակարանը, այդ կարծիքը կարող է ճիշտ լինել, բայց այս երևույթի կապակցությամբ պետք է նշել նաև այն, որ կտրված թերթի առաջին էջի վրա մնացած տառերը գրված են տեքստից տարբերվող թանաքով և, որ հետաքրքրականն է, այդ էջի տողերի քանակը չի համընկնում տեքստի էջերի տողերի քանակի հետ: Ուստի կարելի է ենթադրել, որ կտրված թերթի առաջին էջի վրա, «Բարթլոս Ցեսվլերայի» վերջից հետո, կարող էր զետեղված լինել հիշատակարան, որը կարող էր գրված լինել ոչ թե արտագրող գրչի, այլ ուրիշ անձնավորության կողմից: Այսպես թե այնպես, պարզ է որ 1. բոլոր օրինակները վերջանում են այն ընդհատված բառով, որով վերջանում է ամենահին ձեռագիրը (A) 2. խմբագրական տարբերություններ օրինակների միջև չեն նշմարվում 3. ամենահին ձեռագրին ավելի շատ (A) հետևում է C օրինակը որը կարող է արտագրված լինել հենց նրանից (A), բայց իր հերթին տուրք է տալիս իր ժամանակի ուղղագրությանը: 4. B օրինակն էլ, որին հետևում են մնացած ձեռագրերը, ինչպես երևում է, A-ձեռագրից է արտագրված. C օրինակի նման նա էլ բնորոշվում է ուղղագրական տարբերություններով, բայց գլխավոր զանազանությունն այն է, որ նա (B); տեղ-տեղ պակաս բառեր ու խոսքեր, ունի: Հիշյալ ABC օրինակների հետ միասին՝ Վրաց

[1] Н. Марр, Из летней поездки в Армению. Заметки и извлечения из армянских рукописей (Зак. вост. отд. РАО J. V стр. 211-241. СПБ. 1891 (այս հոդվածը թարգմանված հայերեն, տ. «Հանդես Ամսօրյա» 18, էջ ).

Պատմության տեքստը հրատարակելու համար կարելի է օգտագործել նաև Երզնկյանցի ձեռքով արտագրված (1) օրինակը։

Ձեռագրերի հիշատակարաններից ուշագրավ են հետևյալները։ A ձեռագրի մեջ մի տեղ կարդում ենք՝

«Պատմութիւն Ղևոնդեայ և գիրքս Նեագրեայ, վերջին՝ Պատմութիւն Վրացեաց յիշատակ է Յովհաննու Կարճաւանեցւոյ, որ փտեալ կայր. վերստին նորոգեցի և կազմել տուի սիրելւոյն իմոյ Շմաւոն վարդապետի Լոռեցւոյ, ի թվիս ՌՃԺԳ։...»

Ուրեմն այս ձեռագիրը մի ժամանակ քրքրված է եղել և 1664 թ. կազմել են տվել։ Հետագայում այս ձեռագիրը պատկանել է Վարդան Բաղիշեցուն.

«Զստացող գրոյս, որ կոչի Ղեվոնդ պատմագիր և սուրբ հօրն անապատականացն Նեագրի բանք և խրատք բազում, որ և Վարդան վարդապետս Բաղիշեցի ստացայ ի հալալ արդեանց իմոց և ետու յիշատակ ի դուռն սուրբ Էջմիածնի ի փրկութիւն հոգւոյ իմոյ։Որք ընթեռնուք և օգտիք ի սուրբ գրոցս յիշեցէք ի Քրիստոս զԲաղիշեցի Վարդան վարդապետն և զծնողսն իւր, ամէն։ Ի թվին ՌՃԼԹ։

Այսպես, ուրեմն 1664 թ. կազմված մեր ձեռագիրը 1690 թ. Էջմիածնին է նվիրում գրքի ստացող Վարդան Բաղիշեցին։

B ձեռագրի հիշատակարաններից մեկը արտագրող Դավիթ Ծնճգկի կողմից պատմում է, որ այս ձեռագիրը Վարդան Բաղիշեցու համար է եղել գրված 1669 թ.։ Ինչպես քիչ առաջ բերված փաստերից երևաց, Բաղիշեցին ունեցել է մի ժամանակ և A ձեռագիրը, որից կարելի է այն շատ հավանական ենթադրությունն անել, թե այդ A ձեռագրից պիտի արտագրված լինեն այն երկերը, որոնք մտնում են B-ի մեջ։ Իբրև ապացույց այդ բանի՝ կարելի է ցույց տալ այն հիշատակարանը, որը նույնությամբ կրկնված է և B ձեռագրի մեջ Ղևոնդ երեցու Պատմությունից հետո։

C ձեռագիրն էլ, ինչպես արտագրող Միքայել երեցն է վկայում իր հիշատակարանների մեջ, գրվել է 1685 թ. Վարդան Բաղիշեցու հիշատակին։

«Գրեցաւ... յիշատակ հարգելի և բանիբուն րաբունապետ Վարդանի և Գրիգոր վարդապետի...»։

Վերոհիշյալ վկայություններից պարզվում է, որ մինչև C ձեռագրի արտագրությունը Բաղիշեցու դպրոցում Վրաց պատմությունը պարունակող երկու ձեռագիր օրինակ կար (A և B). ուրեմն որից է արտագրված C ձեռագիրը։ Համեմատությունից պարզվում է, որ նա առաջ է եկել A ձեռագրից։ Ինչպես B ձեռագրի, նույնպես և C ձեռագրի արտագրողը տուրք է տվել իր ժամանակի ուղղագրությանը, բայց բնագրի մյուս հատկություններն այստեղ ավելի ճշտորեն են պահված, քան B ձեռագրի մեջ։ Բաց թողված բառերն ու խոսքերն այստեղ ավելի քիչ են, քան թե B-ում։

Այսպես ուրեմն, XVII դարի այս երկու ձեռագրերը, իրարից անկախ, A-ից են գալիս, իսկ ավելի ուշ ժամանակի ձեռագրերը՝ B-ից։ Այս վերջինից արտագրված օրինակի համաձայն է Վրաց Պատմությունը՝ հրատարակված Վենետիկում 1884 թ. հետևյալ խորագրով՝ «Համառոտ Պատմութիւն Վրաց, ընծայեալ Ջուանշերի պատմչին»։

Մեզ հասած բոլոր ձեռագրերը, ինչպես նշել ենք, իրենց վերջում ունեն թերություն, որը սակայն մեծ չպետք է եղած լինի

Բացի սրանից՝ թերություն կա նաև գրքի մեջ։ Արդեն հրատարակիչն էլ է նկատել, որ Վախտանգ Գորգասալից հետո պատմված նյութի մեջ մի տեղ ոսայուն կա. Փարսման II-ի թագավորությունը և Եվլաթի կաթողիկոսությունը հիշատակելուց հետո անհասկանալի թռիչք է կատարվում և սկսվում է կյուրապաղատներից մեկի պատմությունը, որի իշխանության ժամանակ վախճանվում է Սամուել կաթողիկոսը և նրա տեղն է գրավում Բարթուղիմեոսը։ Այդ կյուրապաղատը Ստեփանոսն է։ Համեմատելով հայերենի այս տեղը վրացերեն տեքստի հետ՝ պարզվում է, որ սրանից առաջ բաց է թողված Փարսման II-ի որդու՝ Բակուրի ու նրա ժառանգորդ Գուրամ կյուրապաղատի պատմությունը, իսկ հայրապետների շարքում չեն երևում Մակար և Սիմեոն կաթողիկոսները։ Ինչպես երևում է, այս թերությունը թարգմանչի գործ չէ, այլ ար-

տագրողի։ Թէ սկզբնագիրը և մեզ չհասած հնագույն օրինակները հիշյալ կետերը պետք է պարունակեին, այդ կարող ենք հաստատել լրիվ օրինակից վերցրած քաղվածքներով։ Մխիթար Այրիվանեցին, ինչպես հայտնի է, ունի վրաց իշխանների ու թագավորների և մյուս կողմից՝ վրաց հայրապետների ցանկ, որը, ինչպես դիտել են, կազմված է Վրաց Պատմության հայերեն խմբագրության հիման վրա։ Վերոհիշյալ բաց թողնված անձնավորությունները այդ ցանկում կան, ուրեմն Մխիթարի ժամանակ ու նրա ձեռքի տակ եղել է Վրաց Պատմության այնպիսի օրինակ, որը սկզբնագրի լրիվ ընդօրինակությունն էր ներկայացնում։

Հրատարակված «Քարթլիս Ցխովրեբա» կամ «Վրաց Պատմություն» գրքի վերնագիրը վերցված է երևում հենց Պատմության մի հիշատակարանից, որ կցված է ինչպես վրացերենում, այնպես էլ հայերենում, Քարթլիս Ցխովրեբայի մեջ մտած Արչիլ թագավորի վկայաբանությանը։

«Եւ դաւ Պատմութիւնս համառօտ ի ժամանակս շփոթմանն և եդաւ ի գիրքս որ Քարթլիս Ցխաւրեպա, որ է Պատմութիւն Քարթլայ. և եղեւ դաս Ջուանշերը, գրեալ մինչև ց'Վախթանգ թագաւոր, և մինչև ցայս վայր ինքն յավել Ջուանշեր, և զպայրն՝ յանձնեաց տեառն և պատահելոյն ի ժամանակին»։

Այս հիշատակարանից չի երևում, որ ամբողջ Քարթլիս Ցխովրեբայի հեղինակը Ջուանշերն է եղել, ընդհակառակը, նրան միայն մի մասն է վերագրվում։ Հիշատակարանի մեջ մատնանշած «Պատմութիւն համառօտ»-ը ոչ թե Քարթլիս Ցխովրեբային, այսինքն՝ Վրաց Պատմությանն է վերաբերում, այլ Արչիլի վկայաբանության գրքին և այդ պատճառով էլ չի կարելի արդարացնել հրատարակիչ Ա.Թ. Թիրոյանին այն բանի համար, որ նա հրատարակած գրքին տվել է վերոհիշյալ վերնագիրը։

Ա.Թ. Թիրոյանի խմբագրությամբ լույս տեսած «Վրաց Պատմության» տեքստը բավական մեծ պակասություններ ունի։ Առաջինն այն է, որ տեքստը հաջող օրինակից չի գալիս։ Ինչպես ասել ենք, Կ. Բաղրատունու օրինակը՝ ամենահին օրինակի հետ համեմատած՝ պակաս բառեր ու խոսքեր ունի։ Այս բոլորն ինքն բառ ինքեան կրկնված են և Թիրոյանի հրատարակության մեջ. բացի դրանից, ընդօրինակողի անուշադրության հետևանքով՝ հրատարակությունից դուրս է ընկել մի ամբողջ թերթ։

Չնայած այս թերություններին՝ հիշյալ հրատարակությունը, Մ. Բրոսեի հրատարակած ֆրանսերեն թարգմանության հետ միասին[1]), մեծ դեր է խաղացել Ակադ. Մ. Բրոսեի աշխատություններից հետո վերջնականապես խախտվեց այն գիտնականների կարծիքը, որոնք գտնում էին, որ Քարթլիս Ցխովրեբան կազմված է XVIII դարի սկզբին, Վախտանգ VI-ի ու նրա հանձնաժողովի կողմից, թեպետ՝ գիտնականներից ոմանք այժմ, Քարթլիս Ցխովրեբայի հայերեն խմբագրությունը հրատարակվելուց հետո, դրությունն այնպես են ներկայացնում, իբր թե Վախտանգ VI-ը Քարթլիս Ցխովրեբա»-ն կազմելու ժամանակ օգտագործել է այդ հայերեն խմբագրությունը։

Վրաց Պատմության հայերեն խմբագրության հրատարակումից հետո վրացերեն ու հայերեն խմբագրությունների հարաբերությունների շուրջը եղած աշխատանքը բավական աշխուժացավ։ Առաջինը, որ զբաղվեց այդ հարցով, պրոֆ. Ք. Պատկանյանն էր։ Նա իր աշխատության մեջ՝ «Ванские надписи и значение их для истории передней Азии: о древне-грузинской хронике» զանազան պատմագրական կարգի հարցեր լուսաբանեց, որոնցից մի քանիսը հիմա էլ ընդունելի են։ Նա համեմատության ենթարկեց միմիայն Քարթլիս Ցխովրեբայի սկիզբը, որ ինչպես հիմա արդեն պարզված է, Լեոնտի Մրովելու երկն է՝ «Վրաց թագավորների և նախահայրերի պատմությունը»։ Պատկանյանի դատավճիռը «Քարթլիս Ցխովրեբայի» մասին դրական չէր։ Նրա գլխավոր սխալն այն է, ու նա Քարթլիս Ցխովրեբային նայում էր իբրև մի ամբողջական երկի և ոչ թե զանազան երկերից

[1]) M. Brosset, Cronique Arménienne: additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie SPB, 1851.

կազմված ժողովածուի վրա, և այսպիսով ամբողջության մասին դատում էր միայն մի մասի վերլուծմամբ։

Վրաց գիտական աշխարհից հիշյալ հարցով զբաղվողներից պետք հիշատակել պատմաբան պրոֆ. Յուստինե Աբուլաձեին[1]), ու ակադ. Ի. Ջավախիշվիլուն[2])։ Մասնագետները սանց բացառության հաստատում են, որ Բարթլես Ցնովրեայի հայերեն խմբագրությունը թարգմանված է վրացերենից։ Հայերեն խմբագրության ամենահին օրինակը վերագրում են XIII դարին։ Համեմատելով այս խմբագրությունը Բարթլես Ցնովրեայի վրացերեն խմբագրության հետ, որի ամենահին օրինակներն ուշ ժամանակների արտագրություններ են, երևում է, որ հայերենը բավական համառոտ է։ Այս երևույթը պատճառ դարձավ, որ հետազոտողներից ոմանք ենթադրեն, թե սկզբում վրացերենում էլ հայերենի նման խմբագրություն է եղել։

Այս կարծիքն են հայտնել վերոհիշյալ գիտնականներից Թ. Ժորդանիան և Յ. Աբուլաձեն։ Սակայն ակադ. Ի. Ջավախիշվիլին Բարթլես Ցնովրեայի հայերեն խմբագրությունը համարում է վրացերենից համառոտված թարգմանություն։ Ինչ վերաբերվում է թարգմանության ժամանակին, ակադ. Ջավախիշվիլին, հակառակ Թ. Ժորդանիայի, Յ. Աբուլաձեի և ուրիշների, որոնք այս թարգմանությունը XII դարին են վերագրում, Բրոսեի և այլ գիտնականների նման կարծում է, որ թարգմանությունը XII դարի գործ պետք լինի։

Պրոֆ. Յ. Աբուլաձեն փորձեց նույնիսկ հայերենի հրատարակված տեքստի աղավաղումներն ուղղել, սակայն այս փորձը, ինչպես հիմա է պարզվում, հաջող չէ։ Հիմա մենք ի գեհս ամենահին ձեռագրի, ունենք Բարթլես Ցնովրեայի համեմատաբար լավ օրինակ, որի հետ համեմատելով պրոֆ. Աբուլաձեի ուղղված տեղերը՝ տեսնում ենք, որ այդ ուղղումները մեծ մասամբ ճիշտ չեն։

«Բարթլես Ցնովրեայի» վրացերեն տեքստի այն տեղերը, որոնց մեջ կան տեղեկություններ հայերի և Հայաստանի մասին, վերջին ժամանակներս թարգմանված են հայերեն պրոֆ. Լ. Մելիքսեթ-բեկի կողմից[3])։ Նա իր թարգմանած հատվածների կողքին զետեղեց նույնպես այդ հատվածների համապատասխան տեղերը Բարթլես Ցնովրեայի հին հայերեն թարգմանությունից։ Հին հայերեն թարգմանությունը, ինչպես ինքը՝ Մելիքսեթ-բեկն է ասում, բերված է իր թարգմանության կողքին, «որպեսզի դրանով, մեկ կողմից, դյուրություն տված լինի ընթերցողին՝ կարևոր համեմատություններ կատարելու համար, և մյուս կողմից՝ ցույց տա, թե XII դարի հայերեն թարգմանությունը որքան է շեղվում բնագրից և, ուրեմն, որքան հավատ կարելի է ընծայել վերջինիս՝ այս կամ այն խնդիրներ լուծելիս...»։ Շեղումներ ցույց տալու ժամանակ պրոֆ. Լ. Մ-բեկը երբեք չի համաձայնում որոշ տեղերում հին թարգմանչի հետ ու տեղ-տեղ տարբեր, սակայն անճիշտ կերպով է տալիս թարգմանությունը, որ և կապացուցվի ստորև։

Այս է գլխավորապես այն հիմնական աշխատանքը, որ կատարված է մինչև օրս Բարթլես Ցնովրեայի հայերեն ու վրացերեն խմբագրությունների շուրջը։

Այժմ անցնենք մեր դիտողություններին.

«Բարթլես Ցնովրեայի» խմբագրությունը, կամ Վրաց Պատմությունը, վրացերենից է թարգմանված։ Այս հաստատվում է ոչ միայն տառադարձության ժամանակ տեղ գտած նման տառերի շփոթմամբ, այլ որոշ nonsens-ներով, որոնք միայն վրացերենից կարող էին առաջացած լինել։ Թարգմանությունը տեղ-տեղ համընկնում է վրացերենի հետ, տեղ-տեղ հետա-

1) Յուստ. Աբուլաձե, «Վրաց մատյանի հին հայկական թարգմանություն» (վրացերեն), տ. «Մոամբեի» ամսաթերթ, 1901։

2) Իվ. Ջավախիշվիլի, «Հին վրացերեն պատմական գրականություն» (վրացերեն), I հրատ., 1916։

3) Պրոֆ. դ-ր Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, I, Երևան, 1934.

նում է բնագրից, կամ նաև բաց թողնված կամ ավելացված որոշ տեղեր։ Ավելացված են այնպիսի մասեր, որոնք չեն կարող վրացերենում եղած լինել։ Ինչպես երևում է, թարգմանիչը որոշ նպատակով է պակասեցնում և ավելացնում այս կամ այն մասերը։

Քարթլիս Ցխովրեբայի հայերեն ընտրովի թարգմանությունը սկզբնական մասում ավելի քիչ է համառոտված (Լևոնի Մրովելու և Ջուանշերի երկերում)։ Այս մասից բաց չի թողնված որևէ մի ուշագրավ երևույթ։

Բազմաթիվ մասեր, որոնք կամ շատ են սղված, կամ հաճախ բաց են թողնված, մեծ մասամբ վերաբերում են «Քարթլիս Ցխովրեբայում» տեղ գտած ուրիշ երկերի, առանձնապես «Քարթլի մատյանին» ու «Դավիթ Շինողի պատմությանը»։ Այս մասերից, այսինքն՝ վերջին երկու երկից, հայերեն խմբագրության մեջ չեն երևում, ինչպես արդեն ուրիշներն էլ են նկատել, ոչ միայն ժամանակագրական բնույթ կրող տեղեկությունները, այլ և շատ այնպիսի դեպքեր, որոնք Վրաստանի ներքին կյանքին են վերաբերում և ոչ մի կապ չունեն դրսի աշխարհի հետ։ Հենց այսպիսի աղավաղություն ենք տեսնում, երբ մանրամասնորեն ծանոթանում ենք այս երկերի վրացերեն ու հայերեն տեքստի հետ։ Այն հանգամանքը, որ այս հուշարձանները համեմատաբար մեծ չափով են համառոտված, իմ կարծիքով, ոչ թե այն բանով է բացատրվում, որ հայերենի նման ինչ-որ համառոտ խմբագրություն պիտի գոյություն ունենար վրացերենում, այլ նրանով, որ հայ թարգմանիչը այս դեպքում ուրույն տեսակետով է առաջնորդվել։ Ցանկանալով տալ հայ ընթերցողին Վրաց պատմության գիրքը՝ թարգմանիչն աշխատում է Քարթլիս Ցխովրեբայի մեջ դետեղված գրքերի բովանդակությունը հարմարեցնել պատմական միջավայրին։

Քարթլիս Ցխովրեբայի մեջ ամփոփված երկերում պատմված դեպքերը նա հայ ընթերցողին տալիս է ոչ թե ամբողջությամբ և մանրամասնորեն, այլ ընտրելով միայն գլխավորն ու համառոտելով։ Վերցնում է այնպիսի դեպքեր, որոնք որևէ կերպ կամ հայոց պատմության եղելությունների հետ են կապված, կամ հիշեցնում են այդպիսիները։ Բաց չի թողնում այնպիսի տեղեր, որտեղ այսպես թե այնպես հայ է մասնակցում։ Եվ եթե որևէ մի ստվեր է ընկած նման դեպքերում հայ գործչի վրա, հայ թարգմանիչն աշխատում է որևէ կերպ մեղմացնել այն, կամ բոլորովին հանել կամ թե, լավագույն դեպքում, այնպես փոխել, որ ընդունելի լինի հայ ընթերցողին։

Այս բոլորից հետո մեզ թվում է, որ Վրաց Պատմությունը ոչ թե հասարակ թարգմանություն է, այլ մի համառոտություն է, որ կատարված է որոշ աշխարհահայացք ունեցող անձնավորության ձեռքով, որոշ նպատակով։

Ո՞վ պիտի լինի թարգմանիչը և ինչ աշխարհահայացքի տեր։ «Քարթլիս Ցխովրեբայի» կամ Վրաց Պատմության թարգմանիչն անշուշտ հայ է։ Այս է վկայում թեկուզ այն, որ Նունեի մասին վրացերենում ասված է, որ նա «մայրն և ավագանն է մեր», իսկ հայերենում՝ դրա տեղը կարդում ենք «մայրն Վրաց»։ Հայ թարգմանիչը, ինչպես պարզվում է, միաբնակ է, և այս շատ պարզ երևում է այն հավելվածներից, որ թարգմանիչն է կատարել։ Օրինակ՝ երբ թարգմանիչը Վասիլ կայսեր կողմից Բագրատ արքայորդուն պատանդ տանելու դեպքն է վերցնում, անկասկած հիշում է այն եղելությունը, որ նույն Վասիլ կայսրը ջուր օրհնելու համար կանչեց հայ կաթողիկոս Պետրոսին, «կոչեցեալ առ ինքն զմեծն կաթողիկոս Հայոց զՊետրոս... և եհաս կայսրն մեծ սքանչելիս ի վերայ ջրոյն, և գովեաց զհավատս Հայոց»։ Նույնն է հաստատում և այն նկարագրությունը, որ կատարում է թարգմանիչը վրացական-հայկական եկեղեցական բանավեճի առթիվ, ներկայացնելով այն վրացերեն տեքստին միանգամայն հակառակ։

«Քարթլիս Ցխովրեբայի» հայ թարգմանիչը մտցնելով դեպքեր, որոնք չկան վրաց բնագրում, ցույց է տալիս, որ ինքը քաջ ծանոթ է հայերեն պատմական գրականության հետ։ Այսպես, օր. երբ Ջուանշերի երկից վերցնում է Ներսեհի մասին պատ-

մածը, ավելացնում է, որ Գարսից «Բէլ, որ նա ինքն է Նեբրովթ, որ Կռաւնոսն կոչի՝ պղատեալ է...»: Բելի ու Նեբրոթի նույնությունը, ինչպես պարզվում է, վերցված է Մովսես Խորենացուց, որտեղ (I, գլ. 7) ասված է՝ «Բայց ես ասեմ զԿըռոնոսդ անուն զԲէլ, Նեբրովթ լեալ»: Բացի Խորենացուց՝ թարգմանիչը ծանոթ է Սեբեոսի Պատմության հետ ևս: Մանձևսի եկեղեցու պատմությունը նույնպես հայկական աղբյուրներից է վերցված: Ի միջի այլոց, նրա պատմածն այս տեսակետից շատ նման է Սամվել Անեցու ու Մխիթար Անեցու պատմածներին: Պետրոս կաթողիկոսի սքանչելագործության մասին եղած հատվածն էլ (որը թարգմանիչն իր թարգմանության մեջ է մտցնում) հայկական աղբյուրից է քաղում, և փոխ է առնված «Կոզեռնի Տեսլեան» հեղինակից[1]) և այլն և այլն:

Այսպիսով «Քարթլիս Ցխովրեբայի» հայերեն համառոտության թարգմանիչ=խմբագիրը հայ է, միաժամանակ իր դավանությամբ և քաղաքական լավ ծանոթ ինչպես հին, նույնպես էլ ժամանակակից հայկական պատմության հետ:

Ե՞րբ է կատարված Վրաց պատմության թարգմանությունը:

Թարգմանությունն ընդհատված է 1125թ. դեպքով, այս իսկ թիվը պետք է համարել թարգմանության terminus à quo-ն: Ճիշտ է, հայերեն թարգմանությունն անավարտ կերպով «Նստուցյ» բառով է ընդհատվում, բայց այս բառից հետո տեքստը չպետք է շարունակվեր, ընդամենը մի քանի տող պիտի լիներ, որովհետև «Դավիթ Շինողի պատմությունը» բնագրի՝ այսինքն՝ «Քարթլիս Ցխովրեբայի» վերջին երկն էր, ինչպես այս հաստատել է ակադ. Ի. Ջավախիշվիլին:

Ինչ վերաբերում է terminus ad quem-ին, մասնագետները մեծ մասամբ իբրև այդպիսին ընդունում են XIII դարը: Իմ կարծիքով, այս երկրորդ սահմանագիծը հեռու է տարված: Արդեն պատմաբան Թ. Ժորդանիան Քարթլիս Ցխովրեբայի հայերեն խմբագրության ֆրանսերեն թարգմանության մեջ նկատել է մի տեղ, որից, նաև մեր կարծիքով, երևում է, որ թարգմանիչը Դավիթ Շինողի ժամանակակից է, ամենաշատը՝ կրտսեր ժամանակակից: Երբ թարգմանիչը, իբրև հավելված, Սարկավագի և Դավիթ արքայի մտերիմ հարաբերության մասին է խոսում, գրում է. «Եւ տեսաք արքեամբ կատարեալ զբան առաջասին [որով Սարկավագն էր զինում արքային] ի վերայ թագավորին, և յոլովք ի բանից անտի վայելեին նմա». և հետո թարգմանիչը թվում է այն փորձանքները, որոնցից անվնաս անցավ Դավիթ արքան և որոնց մասին խոսում է նաև բնագիրը:

Դավիթ շինողի պատմության գրելու ժամանակը ակադ. Ի. Ջավախիշվիլին համարում է 1123—1126 թ. որ և ընդունում են ուրիշները: Պարզ է, որ Քարթլիս Ցխովրեբայի մեջ այս պատմությունը մտած պիտի լինի այդ ժամանակից հետո: Հայ թարգմանիչը արդեն ձեռքի տակ է ունեցել այնպիսի ձեռագիր, որի մեջ զետեղված է եղել հիշյալ պատմությունը: Թարգմանիչը Դավիթ արքայի վերջին օրերին ականատես է եղել. ուրեմն և իբրև կրտսեր ժամանակակից, նա Քարթլիս Ցխովրեբայի մեջ զետեղված Դավիթ արքայի պատմությունը կարող էր թարգմանել XII դարի միայն երկրորդ կեսում:

Վրաց Պատմության հայերեն խմբագրությունը, չնայած այն հանգամանքին որ նա՝ իր աղբյուրի հետ համեմատած՝ համառոտ է, կարող է որոշ գաղափար տալ այդ աղբյուրի, այսինքն՝ «Քարթլիս Ցխովրեբայի» առաջին վրացերեն խմբագրության կազմության մասին, որից հին ձեռագրերը մեզ չեն հասել: Խոսելով հայերեն խմբագրության համառոտ լինելու մասին, նկատի պիտի ունենանք այն, որ նրա համառոտությունը ոչ թե նրա մեջ տեղ գտած երկերի թվի նվազեցում է նշանակում, այլ այդ երկերի բովանդակության սղում:

Երբ «Քարթլիս Ցխովրեբայի» հայերեն խմբագրության համեմատ ուսումնասիրում ենք այս հուշարձանի վրացերեն հին օրինակները (XV—XVII դ. դ.), նախ և առաջ ուշադրության է գրավում այն, որ XII

[1] *Н. Я. Марр*, Сказание о католикосе Петре и ученом Иоанне Козерне (из сборника „Восточные записки", СПБ, 1895).

դարի վրացերեն Քարթլիս Ցխովրեբան բաղկացած է եղել հետևյալ երկերից. 1) Լեոնտի Մրովելու Վրաց թագավորների և նախահայրերի պատմությունը. 2) Ջուանշերի՝ Վախտանգ Գորգասալի պատմությունը. 3) Արչիլի վկայաբանությունը. 4) Քարթլի մատյանը և 5) Դավիթ արքայի պատմությունը։

Երկրորդ աչքի ընկնող երևույթը, ինչպես դեռ Թ. Ժորդանիան է նկատել, այն է, որ հայերեն «Վրաց Պատմության» մեջ Նունեի վարքը պատմված է առաջին դեմքով, այն ժամանակ երբ Քարթլիս Ցխովրեբայի մեզ հասած վրացերեն հին ձեռագրերի մեջ նույն պատմությունը ներկայացված է երրորդ դեմքով։ Թ. Ժորդանիան կարծում էր, որ հայերեն թարգմանության մեջ հիշյալ վարքը Նունեի այսպես կոչված, «Նոր վարկանութից» է գալիս, և ոչ թե երկրորդից։ Այն ժամանակ «Նոր վարկանա» կոչվում էր X դ. ձեռագրի՝ «Շատբերդի ժողովածուի» մեջ զետեղված Նունեի վարքը, իսկ երկրորդ՝ Լեոնտի Մրովելու ձեռքով կազմված վարքը։ Բայց Նունեի վարքի վրացերեն տեքստերի ուսումնասիրությունը՝ Վրաց Պատմության հայերեն խմբագրության մեջ գտնվող վարքի առնչությամբ՝ պատմաբան Ժորդանիայի արտահայտած կարծիքը չի արդարացնում։ Նունեի վարքի հայերեն թարգմանությունը մոտիկ հարաբերություն ունի Քարթլիս Ցխովրեբայի մեջ տեղ գրաված Լեոնտի Մրովելու կողմից կազմված վարքի հետ, և այն հանգամանքը, որ թարգմանության մեջ վարքը պատմվում է առաջին դեմքով, իսկ վրացերենում (մեզ հասած Ք. Ց.-ի հին ձեռագրերում) երրորդ դեմքով, ըստ իս՝ այն է նշանակում, որ Քարթլիս Ցխովրեբայի XII դարի վրացերեն խմբագրության մեջ ևս Լեոնտի Մրովելու ձեռքով կազմված Նունեի վարքը նույնպես առաջին դեմքով է եղել շարադրված և հետագայում միայն խմբագիրների կողմից դարձվել է երրորդ դեմքով։

«Քարթլիս Ցխովրեբայի» հայերեն հին թարգմանությունը վրացերեն բնագրի համար, բացի վերոհիշյալ կողմերից, ունի մի նշանակություն ևս։ Այդ արդեն լեքսիկային է վերաբերում։ Քարթլիս Ցխովրեբայի վրացերեն տեքստի մեջ պատահում են այնպիսի բառեր, որոնց գործածությունը հազվագյուտ է հին վրացական տեքստերում։ Այս տեսակի բառերի իմաստը ճշտորեն սահմանելու համար անգնահատելի օժանդակություն է ցույց տալիս մեզ հայերեն հին թարգմանությունը։ Պետք ասել, որ թարգմանիչը, չնայած այն սակավաթիվ nonsens-ներին, որոնք տեղ են գտել նրա թարգմանության մեջ, գլխավորապես բնագրի օրինակի շնորհիվ (երևի ձեռագիրը լավ չէր կարդացվում), լավ է տիրապետում վրացերեն լեզվին։ Նույն իսկ բոլոր հազվագյուտ բառերը, որոնք կան Քարթլիս Ցխովրեբայի տեքստում, թարգմանիչը ճշտությամբ է հասկացել։ Այդպիսիքն են՝

კნისობა («կնիսոբա»), որը թարգմանված է «ղրուանք» բառով։
უძლები («ուձլեբի»), » » » «յղի» »
ჩუგლუგი («չուգլուգի»), » » » «երկաթակուռ մահակով».
ხანდაკი («խանդակի») » » » «խոր փոս» բառով
ხოსტაკი (խոստակի») » » » «գանձ, ստացվածք, սուրբ կամ խաչ» բառերով։
სეფე («սեփե») » » » «արքունիք» բառով
კილიკი («կիլիկի») » » » «մահիճ» »
არძანიგი («արձանիգի») » » » «արժել» » և այլն։

Իմ կարծիքով, սխալվում է, պրոֆ. Լ. Մելիքսեթբեկը, երբ իր թարգմանած հատվածների մեջ վերոհիշյալ բառերից մի քանիսը և այլ բառեր, որոնք հաճախ են գործածված հին վրացերենում, այնպես չի թարգմանում, ինչպես հին թարգմանիչը, այլ տալիս է ուրիշ անհաջող և անճիշտ բառերով։ Երևի, նա նպատակ է ունեցել ցույց տալ հին թարգմանչի «շեղումները»

մի կողմը։ Բայց ճշմարտությունը պահանջում է ասել, որ հին թարգմանիչը ավելի լավ է հասկացել ընդհանրապես բնագիրը և մասնավորապես այժմ մեզ համար դժվար ըմբռնելի տեղերը, քան թե նոր թարգմանիչը։ Դիմենք փաստերին.

უძლები («ուձլեբի») պրոֆ. Լ. Մ.-Բ-ը թարգմանում է «տկար» բառով, երբ այն նշանակում է՝ «չքի» (հին թարգմանիչը հենց այս բառով է թարգմանել)։

არძანგი («արձանգի») նոր թարգմանիչը թարգմանում է «երկցություն» բառով, երբ նա նշանակում է «արժանիք=արժել» (հին թարգմանիչը այս բառն էլ լավ է հասկացել, դնելով դրա փոխարեն՝ «արժել» բառը)։

წყობა («ծղ'որա») բառը, որ նշանակում է «պատերազմել», շփոթելով նոր վրացերենի նշանակության հետ, նոր թարգմանիչը թարգմանում է իբրև «կարգի կանչել»։

სოფელი («սոփելի») բառը, որ հին վրացերենում, նշանակում է «աշխարհ» իսկ նորում՝ «գյուղ», նույնպես մի տեղ Մ.-Բ-ը թարգմանել է «գյուղ» բառով («მოუღოლა მთავართა სოფლისათა») = դիմեց գյուղապետներին»?!)

ერისთავი («էրիսթավի») «իշխան» բառով է թարգմանված, մինչդեռ այն նշանակում է՝ «զորագլուխ»։

განცდა («գանցդա»), որ նշանակում է «անցնել», թարգմանված է «հարձուփորձի ենթարկել» դարձվածքով, դարձյալ շփոթելով նոր վրացերենի հետ։

ახუთა («ախուտա») բայ, որ նշանակում է «ընդունել կամ վերցնել» և այն էլ ոչ թե մեկը, այլ շատ, պրոֆ. Լ. Մ.-Բ-ը թարգմանում է «բաժանվել» բառով, որ նույնպես սխալ է և այլն։

«Վրաց պատմության» մեջ, ինչպես ըսպասելի է, կան այնպիսի բառեր, որոնք սովորական չեն հին հայերենում։ Այս տեսակետից մեր հուշարձանը ուսումնասիրության առարկա դարձավ պրոֆ Հ. Աճառյանի կողմից, որն իր «Հայերեն նոր բառեր հին մատենագրության մեջ (II հատ. Վիեննա 1913—1922) գրքում առանձին գլուխ է նվիրում «Վրաց Պատմության»-ը հետեյալ վերնագրով. «Հայերեն նոր բառեր Ջուանշերի Վրաց Պատմության մեջ» (գլ. ԻԴ)։

Հիշյալ հոդվածի մեջ ստուգաբանված են միայն հետևյալ 4 բառերը՝ պասանիկ, սեմփոր, սրահանգ ու փրոտխոսիկ։ Պասանիկ ու սրահանգ բառերի մասին տված բացատրությունները ճիշտ են, բայց կասկած է հարուցում միայն «սեմփոր» և «փրոտխոսիկ» բառերի մեկնաբանությունը։ «Սեմփոր», որ Վենետիկի հրատարակության մեջ «սեմբոր» ձևով է ներկայացված («և եղև ի նոսա ախտ սեմբորի») պրոֆ. Աճառյանի կարծիքով հունարենից է վերցված, ուր συμφορή (կամ συμφορά) նշանակում է reunion, rencontre des maladies։ Վրացերեն բնագրի հետ համեմատելով՝ այս բառի համարժեքն է «სნება მუცლისა», որ նշանակում է՝ «ախտ փորի»։ Այստեղից երևում է, որ «սեմփոր» (ամենահին ձեռագրի մեջ «սենփոր») բարդ բառ է, բաղկացած երկու բառերից՝ մեկը «սեն» ու մյուսը՝ «փոր», որով արտահայտված է վրացերենի „სენი“ (կամ „სნება“) მუცლისა» միայն այնպես, որ առաջին բառը թարգմանված չէ։

«Փրոտխոսիկ» բառը պրոֆ. Հ. Աճառյանը հունարեն φροντιστής-ի հետ է կապում, որը հայերենում պիտի տար «փրուրխոսիկ» ձևը, բայց «Լ» և «Ր» տառերի միացմամբ առաջացած է երևում «փրոտխոսիկ», որ և մեկնողի առաջարկությամբ պիտի ուղղվի։ Կարող է այս բառի ստուգաբանությունը ճիշտ լինել, բայց սրա սխալ ձևը ոչ թե հայերենի հիման վրա է բացատրված, այլ սրա փոփոխության պատճառը վրացերենում պիտի փնտրել, որովհետև հիշյալ ձևով այս բառը վրացերեն բնագրից է անցել հայերեն թարգմանության մեջ։ Վրացերենում համապատասխան տեղում ունենք «ფროტოთოს կամ „ფროტოთოს“, բառը, որ հայերեն թարգմանության մեջ «փրոտխոսիկ» ձևով է ներկայացված։

Վերջացնելով մեր դիտողությունները «Քարթլիս Ցխովրեբայի» հայերեն թարգմանության մասին՝ մեզ մնում է միայն ամփոփել մեր վերևում ասածները.

«Քարթլիս Ցխովրեբայի» այսինքն Վրաց Պատմության մեջ հասած հայկական

ձեռագրերից միայն 4 օրինակներ կան, որոնք անհրաժեշտ են վերոհիշյալ Պատմության հայկական բնագիրը վերականգնելու համար։

2. Ամենահին ձեռագիրը, որ գրված է համարվում XIII դարի վերջին, լիովին չի պահպանում սկզբնագիրը։

3. «Քարթլիս Ցխովրեբայի» հին հայերեն խմբագրությունը թարգմանված է վրացերենից։ Թարգմանությունը համառոտ է, ունի և հավելվածներ, թե մեկը, թե մյուսը կատարված են որոշ նկատառումներով։

4. Թարգմանիչը հայ է, դավանանքով միաբնակ, և Դավիթ Շինողի կրտսեր ժամանակակից։ Թարգմանությունը կատարված պետք է լինի XII դարի երկրորդ կեսում։

5. Քարթլիս Ցխովրեբայի հայերեն թարգմանությունը օժանդակում է մեզ որոշ գաղափար կազմելու Քարթլիս Ցխովրեբայի մեր ձեռքը չհասած հին վրացերեն առաջին խմբագրության կազմության մասին։

6. Քարթլիս Ցխովրեբայի հայերեն հին թարգմանությանն օժանդակում է մեզ ճշգրիտ սահմանելու վրացերեն տեքստի հընում հազվագյուտ գործածություն ունեցող բառերի իմաստը։ Իր հերթին՝ վրացերեն տեքստի օգնությամբ հայերեն թարգմանության մեջ վերականգնվում են որոշ բառերի ճիշտ ձևերն ու իսկական իմաստը։